ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ—«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»
ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ
ԵՐԵՎԱՆ № 6 1962

ՓԱՅԼԱԿ ԱՆԹԱԲՅԱՆ

# ՎԱՐԴԱՆ ԱՐԵՎԵԼՑՈՒ «ԱՇԽԱՐՀԱՑՈՅՑ»-Ը ԵՎ ՆՐԱ ՆՈՐ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Վարդան Արևելցու «Աշխարհացոյց»-ը հայագիտությանը վաղուց հայտնի բնագրերի թվին է պատկանում։ Առաջին անգամ այն հրատարակվել է 1728 թվականին Կ. Պոլսում, Երեմիայի բառգրքին առընթեր[1], երկրորդ անգամ լույս է տեսել 1819 թվականին Փարիզում, ֆրանսերեն թարգմանության հետ միասին, որն իրագործել է անվանի հայագետ Սեն-Մարտենը[2], իսկ երրորդ անգամ՝ «Բազմավէպ»-ի մեջ 1887 թվականին[3]։

Վերոհիշյալ բոլոր հրատարակությունները էլ, իրագործված լինելով ընդամենը մեկ կամ երկու ձեռագրերի հիման վրա, հասկանալի է, որ չէին կարող լրիվ պատկերացում տալ «Աշխարհացոյց»-ի բնագրի մասին, որը դարերի ընթացքում կրել է խմբագրական փոփոխություններ և բազմաթիվ ընդմիջարկություններ է ընկալել իր մեջ։ «Աշխարհացոյց»-ի նոր, բազմաթիվ ձեռագիր ընդօրինակությունների բաղդատությամբ ստուգված, քննական հրատարակության պահանջը վաղուց ի վեր զգալի էր և այդ օգտակար գործը բարեխղճորեն ի կատար է ածել ֆրանսահայ անվանի բանասեր Հայկ Պերպերյանը[4]։ Նոր հրատարակությունն իրագործված է Վենետիկում, Երուսաղեմում, Թավրիզում, Փարիզի Ազգային մատենադարանում, Լոնդոնի Բրիտանական թանգարանում պահվող «Աշխարհացոյց»-ի 24 ձեռագիր ընդօրինակությունների և վերոհիշյալ տպագրությունների բաղդատման ճանապարհով։

Հարգելի բանասերը այս հրատարակության ներածականում ուշադրավ փաստերով հավաստում է «Աշխարհացոյց»-ի Վարդան Արևելցու գրչին պատկանելը, փարատելով այդ առթիվ եղած տարակուսանքը, որոշակիորեն ցույց է տալիս, որ հրատարակվող բնագիրը հասել է մեզ առնվազն երկու՝ համառոտ և ընդարձակ խմբագրություններով, մեջ է բերում անհրաժեշտ տեղեկություններ բնագրի կազմության համար իր օգտագործած ձեռագրերի, տպագրությունների մասին և քննարկում «Աշխարհացոյց»-ի հետ առնչվող մի քանի այլ հարցեր։ Նախորդ հրատարակությունների նկատմամբ մեծ առավելություններ ունի նոր լույս ընծայված բնագիրը։ Հրատարակիչն այն մասնատել է համապատասխան գլուխների և հատվածների, յուրաքանչյուր գլխի տակով պատշաճ խորագիր և տողատակում խնամքով մեջ է բերել ձեռագրական տարբերակ-

[1] Տե՛ս Բառգիրք հայոց արարեալ ի տէր Եղիազարին, Երեմիա վարդապետի, ՌՃՀԷ, Կ. Պոլիս, էջ 497—535։

[2] J. Saint-Martin, Mémoires historiques et géographiques sur l'Armenie... Paris, 1819, tome II, p. 406—453.

[3] «Բազմավէպ», Վենետիկ, 1887 թ., էջ 134—144։

[4] Հ. Պերպերյան, Աշխարհացոյց Վարդանայ վարդապետի, Բարիզ, 1960։

վածքները և այլն։ Պետք է նկատել, սակայն, որ այս հրատարակությունը շատ ավելի շահած կլիներ, եթե իր վերջում ունենար անձնանունների և տեղանունների ցանկեր, մի բան, որ խիստ անհրաժեշտ է մանավանդ աշխարհագրական բովանդակությամբ բնագրերի համար։

Բանասիրական կարևոր նշանակություն ունեն ուսումնասիրության ներածականի հատկապես այն մասերը, որոնք նվիրված են «Աշխարհացույց»-ի հեղինակի որոշման հարցին։

Հայտնի է, որ փոքր չէ թիվը այն հայագետների, որոնք տարակուսանքներ էին հայտնել «Աշխարհացույց»-ի Վարդան Արևելցու գրչին պատկանելու վերաբերյալ։ Նրանցից առաջինն է եղել Մ. Չամչյանը, որը գրել է. «Բայց հեղինակ նորին («Աշխարհացույց»-ի) յայտ է բան գտս (զՎարդան) և բան գուշակեր սորա՝ զՅովհաննէս Երզնկացին, զի ի ձեռագիր օրինակս բանք լինին անդ և զԵզնկացւոյն, մանաւանդ, զի որովհետև յայսմիկ գիրս յաւելեալ են օտարոտի բանք յանդգոյշ անձանց, դժուարին լինի որոշել զհարազատ հեղինակ նորին»[5]։ Չամչյանը զգույշ է արտահայտվել, ենթադրել է, որ ընդմիջարկություններով կարող էին «Աշխարհացույց»-ի մեջ ներմուծված լինել «օտարոտի բանք», սակայն նրա կասկածը Վարդան Արևելցու «Աշխարհացույց»-ի հեղինակ լինելու մասին առավելապես խորացրել են հետագայում։ Բ. Սարգիսյանի վկայությամբ, Մ. Ավգերյանը ևս «Վարդանայ ուրումն անծանօթի վերագրած է գրուածս»[6]. Մոտավորապես համանման կարծիքներ են հայտնել նաև Սեն-Մարտենը, Հ. Ոսկյանը, Բ. Սարգիսյանը և մի շարք այլ հայագետներ։

«Աշխարհացույց»-ի մեջ Սամարղանդը հորջորջվում է իբրև «աթոռն նեղազաց ազգին», իսկ Մոսկվան՝ «աթոռ է ազգին ռուսաց»։ Ակադեմիկոս Ա. Հովհաննիսյանը[7] իրավացիորեն գրում է, որ Սամարղանդը Լանկթամուրի օրոք (1370 թվականից հետո) դարձավ «աթոռ նեղազաց ազգին», իսկ Մոսկվան Ռուսիայի մայրաքաղաք դարձավ Կուլիկովյան ճակատամարտից՝ 1380 թվականից հետո։ Ելնելով այս տվյալներից, ինչպես նաև նկատի ունենալով այն հանգամանքը, որ Կ. Պոլիսը «Աշխարհացույց»-ի հեղինակի կողմից նշված է որպես հույների պատկանող քաղաք, բազմավաստակ ակադեմիկոսը եկել է այն որոշակի եզրակացության, որ «Աշխարհացույցը» շարադրված պետք է լինի 1370—1453 թթ. միջոցին։

Այսպիսով, բանասիրության մեջ ընդունված էր արդեն կարծել, որ «Աշխարհացույց»-ի հեղինակը Վարդան Արևելցին չէ, որ այն շարադրված է XIV կամ XV դարում ապրած որևէ այլ անձնավորության կողմից։

Սակայն, Հ. Պերպերյանը, իր ներածական ուսումնասիրության մեջ, «Աշխարհացույց»-ի զանազան խմբագրությունների հարցի որոշակի լուսաբանման և նրանց սահմանազատման շնորհիվ, ապացուցել է, որ բոլոր այն տեղիները, որոնք չէին կարող գրվել XIII դարի մատենագիր Վարդան Արևելցու կողմից և որոնք հիմք էին ծառայում բանասերների տարակուսանքներին, հետագա ընդմիջարկություններ են. դրանք ներմուծվել են ավելի ուշ ժամանակներում իրագործված խմբագրության ժամանակ և այլ առիթներով։ Այս իրողությունը

---

5 Մ. Չամչեան, Պատմութիւն հայոց, 1784, հատ. Գ., էջ 242։

6 Բ. Սարգիսեան, Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վենետիկ, 1924, հատ. Բ., էջ 809—810։

7 Ա. Հովհաննիսյան, Դրվագներ հայ ազատագրական մտքի պատմության, Երևան, 1957, հատոր Ա., էջ 462։

նկատի ունենալով Հ. Պերպերյանը իրավացիորեն վերահաստատել է Վարդան Արևելցուն իր հեղինակային իրավունքների մեջ, մի բան, որ դարեր շարունակ վկայվել է նաև «Աշխարհացույց»-ի գրեթե բոլոր ձեռագրերի խորագրերում։

Այս է, մեր կարծիքով, Հ. Պերպերյանի ներածական ուսումնասիրության ամենակարևոր հատվածը։ Սակայն ըստ ամենայնի գնահատելի է նաև այն, որ 24 ձեռագրի ընդօրինակությունների և նախորդ հրատարակությունների ընձեռած տվյալներով կատարված երկու խմբագրությունների համեմատման շնորհիվ հնարավոր է դարձել գեթ մոտավորապես ճշտել «Աշխարհացույց»-ի Վարդան Արևելցուն պատկանող մասը։

Ըստ արժանվույն բարձր գնահատելով գիտնական-հրատարակչի կատարած բանասիրական հետազոտությունները ու բնական բնագրի հրատարակությունը, միաժամանակ չենք կարող չափսոսալ, որ նա հնարավորություն չի ունեցել օգտագործելու Վ. Արևելցու «Աշխարհացույց»-ի մեր Մատենադարանում պահվող ավելի քան 70 ընդօրինակությունները։ Այդ ձեռագրերը, անտարակույս, որոշ չափով կնպաստեին բնագիրը ավելի կատարյալ ներկայացնելու, ինչպես նաև խմբագրությունների և «Աշխարհացույց»-ի հետ առնչվող մի քանի հարցեր առավել հստակությամբ լուծելու գործին։

Սույն հոդվածով մենք ցանկանում ենք մասամբ լրացնել այդ թերին, բացահայտելով «Աշխարհացույց»-ի Մատենադարանում պահվող ձեռագրերի նշանակությունը այդ բնագրի հետ կապված մի քանի հարցերի ավելի հստակ ու բազմակողմանի լուսաբանման աշխատանքին օգտակար լինելու համար։



Հայաստանի պետական Մատենադարանում պահվում են «Աշխարհացույց»-ի ավելի քան 70 ձեռագրեր՝ գրված XVI—XVII դարերում։ Այդ ձեռագրերի ուսումնասիրությունը մեզ հստակորեն բերել է այն եզրակացության, որ հիմնականում ճիշտ են լուսաբանված Հ. Պերպերյանի կողմից «Աշխարհացույց»-ի նոր հրատարակության մեջ արծարծված բանասիրական և բնագրական հարցադրումները։ Բոլոր ձեռագրերն էլ անխտիր վկայում են, որ «Աշխարհացույց»-ը իրոք անցել է «մշակման» երկարաձիգ և անհարթ ճանապարհ։ Շատ գրիչներ ու «խմբագիրներ» չեն զլացել իրենց միջամտությունը հենց որ պատշաճ առիթը ներկայացել է։ Մեր կարծիքով այդպիսի «առիթներ» հաճախ են ներկայացել ոչ միայն ընդօրինակությունների ժամանակ, երբ գրիչը իր կողմից կատարում էր այս կամ այն կամայական միջամտությունը. «Աշխարհացույց»-ի բուն բովանդակությունն էլ նպաստել է այն բանին, որ ընդմիջարկությունների համար ստեղծվեին նպաստավոր առիթներ։ Ինչպես հայտնի է, «Աշխարհացույց»-ն իր համառոտ խմբագրության մեջ իսկ չի ներկայանում իբրև զուտ աշխարհագրական երկասիրություն։ Նա իր մեջ բովանդակում է և՛ աշխարհագրություն, և՛ պատմություն, և՛ հրաշապատումներ եկեղեցական հայրերի, մասունքների, սուրբ նշխարների մասին, և՛ աստվածաբանություն, և՛ մեկնություն, և այլն։ Այս դրության պատճառով էլ «Աշխարհացույց»-ն անցել է դարերի ընթացքում, կորցնելով իր նախնական, սկզբնագիր վիճակը. առկա երկու խմբագրություններից և ոչ մեկը անաղարտ չի մնացել։ Սակայն պետք է նշել, որ «Աշխարհացույց»-ի մեջ եղած ոչ բոլոր փոփոխություններն են պատահականորեն և աստիճանաբար տեղի ունեցած ընդմիջարկությունների

արդյունք: Եթե այդ այդպես լիներ, հազիվ թե հնարավոր լիներ գտնել որևէ օրինաչափություն ձեռագրերում տեղ գտած նորամուծումների և դասակարգության, և շարադասության մեջ, մինչդեռ այդպիսի օրինաչափության առկայությունն ակնհայտ է: Ուստի պետք է ենթադրել, որ «Աշխարհացույց»-ը խմբագրման է ենթարկվել կոնկրետ ժամկետում և կոնկրետ անձնավորության կողմից: Հավանաբար ճիշտ կլիներ Սեն-Մարտենը, եթե Վարդան Արևելցու աշակերտներից մեկին ընդուներ «Աշխարհացույց»-ի ոչ թե «հեղինակ», այլ միայն՝ «խմբագրող»: Իսկ խմբագրման ժամանակի մասին եղած ենթադրություններից ամենահավանականը, մեզ թվում է, Հ. Պերպերյանի ենթադրությունն է. «սկզբնագիրը, անորոշ թվականի մը, թերևս նույնիսկ ԺԴ դարուն վերջերը, ենթարկված է նոր խմբագրության մը...»[8]:

«Աշխարհացույց»-ի Մատենադարանում պահվող ձեռագրերից համառոտ խմբագրության ներկայացուցիչներն են հետևյալները. № № 2748 (1624 թ.), 4205 (1653 թ.), 1459 (1691 թ.) և 3657 (1677 թ.):

Վերոհիշյալ խմբի ձեռագրերից ամենաուշագրավը № 2748 (1624 թ.) ձեռագիրն է, որտեղ բավականաչափ հստակությամբ ընդգծված է երկու խմբագրությունները բաժանող սահմանագիծը, հետևաբար և մոտավորապես ցույց է տրված բնագրի այն մասը, որը գրված է եղել բուն հեղինակի, այսինքն՝ Վարդան Արևելցու կողմից: Բուն բնագիրը զետեղված է գրադաշտի մեջ, իսկ լուսանցքներում և անգրելի մնացած տարածությունում, ավելի ուշ, այլ գրչի կողմից, գրի են առնված ընդարձակ խմբագրությանը պատկանող բոլոր հատվածները, պարբերությունները, տեղանուններն ու անձնանունները: Միայն այս ձեռագրի ընձեռած տվյալներն էլ բավական կլինեին վերահաստատելու Վարդան Արևելցու հեղինակային իրավունքները: «Աշխարհացույց»-ի համառոտ խմբագրության մյուս ձեռագիր ընդօրինակությունները ևս նույն վկայություններն են բերում բնագրական և բանասիրական բոլոր հարցերի շուրջ, որոնք քննության են առնվել և որոնք ենթակա են լրացուցիչ լուսաբանության:

Ընդարձակ խմբագրությանը պատկանող ձեռագիր ընդօրինակությունների թիվը անհամեմատ ավելի է: Այս խմբի շուրջ 70 ձեռագրերի ուսումնասիրությունը նույնպես չափազանց օգտակար է «Աշխարհացույց»-ի հետ ընդհանրապես առնչվող մի շարք հարցերի պարզաբանման և լուծման համար: Սույն ձեռագրերը մեծապես տարբերվում են ոչ միայն համառոտ խմբագրության պատկանող ձեռագրերից, այլ և իրար նկատմամբ ունեն երբեմն խիստ նկատելի տարբերակներ: Այս բոլորը ուշագրավ են ոչ միայն խմբագրությունները սահմանազատելու և այդ միջոցով մի քանի հարցեր լուսաբանելու համար, այլ նաև վերոհիշյալ հրատարակության համեմատությամբ իրենց բերած «նորություններով», որոնց կարևորությունը հազիվ թե որևէ առարկության հանդիպի:

Այժմ տեսնենք այդ «նորություններից» առավել կարևորները, որոնց մենք հանդիպել ենք վերոհիշյալ ձեռագրերը ուսումնասիրելիս:

Նույնիսկ, եթե սկսելու լինենք խորագրերից կտեսնենք, որ նրանցից ոմանք ևս այլ են, երբեմն բոլորովին տարբեր վերոհիշյալ հրատարակության մեջ տրված տարբերակներից իսկ: Օրինակ. «Աշխարհացոյց է, զորս պատմէ մի բան միայն սկսեալ ի լերկնից»[9]: «Այս է աշխարհացոյց ի յայլմէ արա-

8 Հ. Պերպերյան, Վերոհիշյալ հրատարակությունը, էջ ԺԶ:
9 Մատենադարան, ձեռ. № 6485 (1625—29 թթ.), էջ 87ա:

բեալ»[10], «Աշխարհացոյց գեղեցիկ»[11]: Ուշագրավ է մանավանդ հետևյալ խորագիրը. «Այս է աշխարհացոյց պարզեալ ի վարդապետաց ոմանց»[12], որն ուղղակիորեն ակնարկություն է անում «Աշխարհացոյց»-ի «մշակման» գործում մեկից ավելի անձերի մասնակցության մասին:

Բոլորովին նոր հատվածների և պարբերությունների ենք հանդիպում հետևյալ ձեռագրերում:

№ 3697 (1658 թ.) ձեռագրի 226բ էջում կարդում ենք. «... Հեր և ի Զարևանդ գաւառն է, ի գիւղն, որ Բաղէշու ափ տաւրեկոյ անուանն, և Արեմաթեացւոյն աջն և պսակ փշացն յիր վէմն կայր, որ նահատակեցաւ տաւրեկոյն սուրբ ի Զարեւանդ գաւառի, որ Է. Զարեւանդն խոյ է»[13]:

Նույն ձեռագրի 228ա էջում գտնում ենք հետևյալը. «Գրնունի Ամուկ է, բե(ր)թն անառիկ, ուր կա սուրբ ախտն էմայ, սուրբ Գէորգ անապատն ծովապատ և Ընձաճեաց սուրբ Աստուածածինն»: Իսկ № 5128 (1635 թ.) ձեռագիրը, որը սերտ առնչություն ունի № 3697 ձեռագրի հետ, պարունակում է մի քանի նոր տեղեկություններ զանազան վանքերի ու վայրերի մասին: Այսպիսին է, օրինակ հետևյալ հիշատակությունը. «...և անդ է Քրիստափոր սուրբ տաւրեկոյն և Կարմիր վանքն, ուր կա Փոկաս հայրապետի նշխարն» (187բ)[14]: Այնուհետև նույն էջի լուսանցքում կարդում ենք. «Գ հասն մանանայ բերաւ ի Հայս ի սուրբ տաւրեկոյն Բարդողիմէոսէ, և եդ զայն ափով ի հիմն եկեղեցւոյն, որ հանդէպ Հայի Գողթան գաւառին, առ Երասխայ գետոյն, ի տեղւոջ, որ Մաղարթն կոչին»[15]: Գործյալ նույն ձեռագրի 190ա էջում ընթերցվում է. «Եւ սուրբ ախտն Ագարանք, ուր կա սուրբ խաչն, որ բերաւ յՍա(մ)բօլայ»[16]:

Հավելում «Աշխարհացոյց»-ի, այս միևնույն ձեռագրի 197բ էջում զետեղված է ընդարձակ մի հատված, որը քաղված է Միխայէլ Ասորու «Յաղագս քահանայապետութեան» երկասիրությունից: Այս նույն հատվածը գտնվում է նաև № 462 ձեռագրի 119բ էջում:

№ 4205 (1653 թ.) ձեռագրի մեջ գտնում ենք հետևյալ նոր պարբերությունը. «Այլ և հակառակն և քաղաքն սորաց նզովեալն և բանադրեալն յԱղթամար, բնակարանն ապս[տ]ամբէից արբ[ան]եկաց նեռանն» (էջ 465ա): Ուշագրավ են Խրամ քաղաքի, շրջապատի ու նրա վանքերի մասին № 7190 (ԺԸ դ.) ձեռագրի էջերում առկա տեղեկությունները. «Խրամ քաղաք Շամբի ձորն է, ուր կա նախավկայն Ստեփաննոս և ունի ձորն այն քաղաքն վանորայս, Անդրէի առաքելոյն, ուր Գորգիկ Բագարատն շինեաց զանիվէր Աստուածածինն, սուրբ Սարգիս վանք, սուրբ Առաքելոցն, սուրբ Գրիգոր, սուրբ Յովաննէս և այլ քաղաքն նշխար սրբոց մարտիրոսաց, զոր այժմ կոչի ձորն այն Ամէնափրկիչ Մասան, զամենայն ինչ որ խնդրես կա ի նմա, թէ հացեր և թէ մարմնաւոր, զի է ամենայն բարեաւ, որպէս Եդեմ» (էջ 74բ-75ա):

№ 2370 (1624 թ.) ձեռագրի մեջ Գագիկ Արծրունու կողմից Աղթամարի սուրբ Խաչ վանքի կառուցման մասին պատմող պարբերությունը կցված է

10 Մատենադարան, ձեռ. № 7993 (1672 թ.), էջ 26ա:

11 Մատենադարան, ձեռ. № 1770 (1589 թ.), էջ 79ա:

12 Մատենադարան, ձեռ. № 6567 (1733 թ.), էջ 112բ:

13 Տես նույնը նաև ձեռ. № 5128 (1635 թ.), էջ 188ա:

14 Տես նույնը նաև ձեռ. № № 2567 (1659 թ.), 26ա, 3697, 226ա, 462 (ԺԸ դ.), 113բ:

15 Տես նույնը նաև № 462, 113բ, որտեղ «Մաղարթն» տեղանունը գրված է «Մաղարթն»-ձևով:

16 Տես նույնը նաև ձեռ. № № 2567, 27ա, 462, 114բ:

հետևյալ լրացուցիչ պարզաբանումը. «...որդի Գեւոնդին, զոր կայր Թագաւոր ընդդէմ Սմբ[ա]տին Բագրատունւոյ» (էջ 237ա)։ Նույն ձեռագրում կարդում ենք. «Եւ Գայլ գետն Զ մղոնաւ հեռի է ի Աւրատախոյ» լրացուցիչ տեղեկությունը (էջ 238բ)։

Հետաքրքիր է, որ վերոհիշյալ ձեռագրում ավետարանների գրության մասին հաղորդված տեղեկությունները խիստ տարբերվում են մյուս ձեռագրերում հաղորդվածներից և գրեթե ամբողջությամբ նորություն են, առնվազն «Աշխարհացույց»-ների մեջ։ Այստեղ կարդում ենք. «Եւ ի չորից աւետարանչացն, որ է առաջին Անտիոք, ուր Ղուկաս գրեաց զաւետարանն յետ ութ ու Ժ ամի չարչարանաց փրկչին ասորի լեզուաւ և թարգմանեցաւ ի յոյն լեզու։ Իսկ Յոհաննէս զկնի ԾԴ ամի չարչարանաց փրկչին գրեաց զաւետարանն յԵփեսոս քաղաքի ի յոյն լեզու և յետ ԺԵ ամաց փոխեցաւ առ Քրիստոս։ Իսկ Մատթէոս, յետ Է ամի չարչարանաց փրկչին գրեաց զաւետարանն եբրայեցի լեզուաւ և թարգմանեցաւ յեբրայեցւոյն ի յոյն լեզու։ Եւ Մարկոս յետ ԺԵ ամաց չարչարանաց տեառն մերոյ գրեաց զաւետարանն հրամանաւ Պետրոսի Գաղմատ լեզուաւ, որ է հելլենացի. ի Հռոմ գրեաց և եկաց ամս ԻԲ» (էջ 241բ—242ա)։

Մի քանի ձեռագրերի մեջ[17] գրի է առնված մի ընդարձակ հատված Եդեսիա քաղաքի մասին։ Հետաքրքիր է, որ այն ընդօրինակված է նաև վերը հիշատակված մեզ ծանոթ № 2748 ձեռագրի գրադաշտի մեջ, որտեղ զետեղված է «Աշխարհացույց»-ի համառոտ՝ բուն բնագիրը։ Հակառակ այս հանգամանքին, դժվար է ասույթ անել, որ այն պատկանել է սկզբնագրին կամ հեղինակի գրչին և հավանաբար քաղվածք է մի սկզբնաղբյուրից, որը հակառակ ցույց կատարած մեր պրպտումների, մեզ մնում է անծանոթ, եթե նկատի չունենանք այն, որ միայն մեկ տարբեր (90.000 ճգնավորների դիմավորումը Հերակլին) առնչվում է Միխայիլ Ասորու ժամանակագրության հետ[18]։

Ավելորդ չենք համարում մեջ բերել այդ հատվածը № 2567 ձեռագրից, որտեղ այն մի փոքր տարբերվում է մյուս ընդօրինակություններից։ «...Եւ է (Ուռհայ —Փ. Ա.) թագաւորանիստ քաղաք Արգարու, Հայակաց և Հաշակաւր, որ նախ և առաջին եկեղեցին անդ շինեցաւ ի Թադէոսէ յանուն սուրբ Աստուածած[ի]նին։ Անդ քարոզեցաւ Քրիստոս, նախ և առաջին հիմնարկեալ և օծեալ ի Թադէոսէ առաքելոյն այն խորանն օծ, որ Քրիստոս օրհնեաց և ետ առաքելոյն։ Վասն այս ուռհայեցոց ասէ աւետարանն, թէ էին անդ ոմանք հեթանոսք եկեալ անտի։ Այս ուռհայեցիքս մատեան առ Փիլիպպոս։ Փիլիպպոս և Անդրէաս մատեան առ Քրիստոս ի տան Գամաղիէլի օրհնութեան վարդապետին, ի յաղագմեան օրն ծաղկազարդին։ Եւ նորա երկրպագեալ Յիսուսի մատուցին զ[բ]ենծայն՝ զպատմուճանն անկար և յայլս քաղումս։ Այս ուռհայեցոց ետ տէր մեր Յիսուս Քրիստոս զառաջին երանութիւն և զթուղթն աւրհնութեան թագաւորին և քաղաքին, և զանձեռագործ պատկերն, որ ի սուրբ գաւառակին։ Եւ նոյն ուխի ամենայն եկին ի յաշխարհն խրևանց և յետ խաչելութեան տեառն եկն սուրբ առաքեալն Թադէոս, ունելով ընդ իւրեան զգիւտ զեղարդն։ Ոչ գոյ քաղաք և չէր ուրեք քան զՈւռհայ քաղաք, որ եկամեցաւ ի Քրիստոսէ, զի առա-

[17] Մատենադարան, ձեռ. № № 2748 (1624 թ.), էջ 124բ, 7085 (ԺԷ դ.), էջ 156ա, 1487 (1657 թ.), էջ 41բ, 3657 (1677 թ.), էջ 28բ։

[18] Տես Մ ի խ. Ա ս ո ր ի ժամանակագրութիւն..., Երուսաղէմ, 1871, էջ 298։

չին քարոզութեան պատուն առ է առաքելոցն, զի ի ամայ գոն բազում վանորայս և անթիւ են անդիք ճգնաւորացն, զոր ոմանք ղտեղիք ճգնաւորացն ՂՌ (90.000) ասեն և այլ ոմանք ասեն. «ոչ թէ տեղիքն են ՂՌ, այլ՝ ճգնաւորքն ՂՌ (90.000)», և այս ստոյգ է, զի ի գալ Հերակլ թագաւորի որդին[19] խաչափայտին, որ Խոսրիան զօրավարն տարաւ ի յԵրուսաղիմայ գերի Գ տարի։ Խնդիր եղաւ Հերակլ թագաւորն, որ Կոստանդնոսին իշխան Կիլիկեցին գտաւ ի Թավրէզ։ Ասա (ազդ) արար Հերակլեայ, որ գնաց բազում ամբոխիւ ձերբակալ արաւ զԽոսրով թագաւորն և ասար արարաւ զԹավրէզ և զձեռնիխանան, և առաւ զխաչափայտն և եբեր ի Թէոդոսպօլիս և եդաւ ի որդին, եթէ տար ի յԵրուսաղէմ։ Եւ ճանապարհն հանդիպեցաւ ի յՄուշայ, որ իջին ի լեռնէն ՂՌ անձն ճգնաւորաց՝ ողջոյն թագաւորի որդոյն և երկրպագութիւն խաչափայտին, և զօրութիւն սորայ ի վեր է քան զհատումն մտաց մերոց» (էջ 27բ-28ա)։

№ 8100 (1784 թ.) ձեռագրի մեջ հաղորդվում են հետևյալ նոր տեղեկությունները. «...Զորոյ գետն յԱնու, որ ասեն Արփաչայի, անդ Ղօշավանքն, սուրբ Յովաննէս և սուրբ Գէվորգ զարմանաշէն և հրաշակատար աթոռ և կան բազում եկեղեցիք. Խ (40) խորան է Խ (40) պատարագ կու լինի ասուրն» (էջ 254բ)։

Որոշ ձեռագրերի մեջ հավելումներ կամ ընդմիջարկություններ կան նաև այն դեպքերում, երբ արտագրվել կամ լրացվել է որևէ պարբերություն։ Ինչպես, օրինակ № 2292 (1624 թ.) ձեռագրի 82ա էջում Կամախի բերդի, № 2567 (1659 թ.) ձեռագրի 26ա էջում՝ Որմի քաղաքի, 27ա էջում Հիզանի մասին եղած պարբերությունները։ Այսպիսիների թիվը, որոնք առիթ են հանդիսացել «Աշխարհացույց»-ի էլ ավելի ընդարձակմանը, բավականին շատ են։

Մատենադարանում պահվող ձեռագրերի մեջ քիչ չեն պատահում մանավորապես տեղանունների տարընթերցվածներ, որոնք, հավանաբար, ոչ բոլոր դեպքերում արդյունք են պատահական սխալագրությունների կամ ինչ-որ այլ ձևի աղավաղման, այլ անկասկած, երբեմն նաև ցույց են տալիս համապատասխան տեղանվան ժամանակի ընթացքում կրած փոփոխությունը և կամ ավելի ճիշտ ձևը։ Այդպիսիներից են հետևյալները. օրինակ՝ Արտաւազ փոխանակ՝ Արտազ (ձեռ. № 8728—ԺԷ դ., էջ 419ա), Հաւուց թառ փոխանակ՝ Հայոց թառ (ձեռ. № 3657—ԺԷ դ., էջ 24ա), Արջուց փոխանակ՝ Աղջոց (նույնի՝ էջ 24բ), զԴմաթ փոխանակ զՂմաթ (ձեռ. № 2748—1624 թ. էջ 124ա) և այլն։

Այսքանով մենք փորձեցինք ներկայացնել «Աշխարհացույց»-ի Մատենադարանում պահվող ձեռագրերը այն չափով, ինչ չափով որ առնչվում են Հ. Պերպերյանի վերահիշյալ հրատարակության հետ։ Աշխատեցինք ընդգծել նրանց մի քանի առանձնահատկությունները և բերել նրանց պարունակած օժանդակ «նորությունները», սակայն չենք կարող ասել, որ սպառված է մեր անելիքը նրանց և ընդհանրապես «Աշխարհացույց»-ի հետ առնչվող զանազան հարցերի մասին։

Վերահիշյալ ձեռագրերի այսպիսի նախնական ուսումնասիրությունն էլ ընդգծում է մի նոր և ավելի ամբողջական հրատարակության անհրաժեշտությունը, մի հրատարակության, որը կարողանար ընդգրկել «Աշխարհացույց»-ի նաև այն բոլոր ձեռագրերը, որոնք գտնվում են Մատենադարանում, դուրս և

[19] Մյուս ընդօրինակություններում գրվում են Հերակլին, երբ վերջինս գալիս է Ռահայի սուրբ Սոֆիա տաճարը տեսնելու։

*այլուր։ Այդպիսի հրատարակությունը առավել հնարավորություններ կընձեռի բնագիրը ավելի լիակատար և ավելի ճշգրիտ ներկայացնելու, նրա մեջ կտրվեն բնագրական անհրաժեշտ բոլոր ուղղումներն ու լրացումները։ Բանասիրական մանրազննին և առավել տարածուն հետազոտությունների և ուսումնասիրության հիման վրա կարելի կլիներ վերջնականորեն պարզաբանել «Աշխարհացույց»-ի և նրա հետ առնչվող բազմազան հարցեր։ Օրինակ. շատ կարևոր է որոշակիորեն ճշտել «Աշխարհացույց»-ի գրության գեթ ամենամոտիկ թվականը, զատել և առանձնացնել միայն Վ. Արևելցու անմիջական հեղինակությանը պատկանող բուն բնագիրը, թե ի՞նչ աղբյուրներ է ունեցել հեղինակը ձեռքի տակ, ի՞նչ չափով է օգտվել նրանցից, վերջապես, որոշակիորեն ո՞ր ժամանակներում են միջամտություններ եղել «Աշխարհացույց»-ի խմբագրության և ընդարձակման գործում, ո՞վ կամ ովքեր են այդ խմբագրողները, և այլն, և այլն։*

П. П. АНТАБЯН

## «ГЕОГРАФИЯ» ВАРДАНА АРЕВЕЛЦИ И ЕЕ ЧЕТВЕРТОЕ ИЗДАНИЕ

**(Резюме)**

В 1960 году видный филолог арменист Айк Берберян в Париже выпустил четвертое издание «Географии» Вардана Аревелци (XIII в.). По сравнению с предыдущим это новое критическое издание имеет большие преимущества, наиболее важные из которых окончательно подтверждают принадлежность «Географии» перу Вардана Аревелци, рассеивая сомнения, существовавшие по этому вопросу в филологии. В данном издании полностью уточняется наличие двух редакций—краткой и пространной и приблизительно устанавливается основной, первоначальный текст.

Однако, вследствие того, что уважаемый ученый-издатель не имел возможности использовать более 70 рукописных копий «Географии», хранящихся в Ереванском Матенадаране, его вышеупомянутое издание, вполне естественно, не могло полностью представить текст и пролить свет на ряд филологических и текстологических вопросов.

Настоящая статья, написанная на основании изучения хранящихся в Матенадаране 74 рукописей «Географии», имеет целью отчасти восполнить этот пробел и помочь дальнейшим филологическим изысканиям.

Предварительное изучение вышеупомянутых рукописей привело автора данной статьи к выводу о том, что филологические и текстологические вопросы в издании Айка Берберяна решены в основном правильно. В наших рукописях также имеются экземпляры, представляющие краткую и пространную редакцию и, что особенно важно, в последних содержится ряд интересных позднейших добавлений, которые не нашли места в вышеупомянутом издании. В статье приводятся наиболее важные из них.

Все это приводит автора к заключению о необходимости нового, более целостного и критического издания «Географии», которое охватило

бы все хранящиеся в Матенадаране и других местах рукописи. Только таким путем можно будет окончательно уточнить подлинный текст и многочисленные другие вопросы, связанные с «Географией» Вардана Аревелци.

P. P. ANTABIAN

## LA „GEOGRAPHIE“ DE VARDAN AREVELTSI ET SA 4e PUBLICATION

Haïg Berbérian, philologue arménien renommé, fit paraitre à Paris, en 1960, la 4e publication de la „Géographie“ de Vardan Arévéltsi (XIIIe siècle). Comparée à la précédente, cette nouvelle publication offre de grands avantages. Elle prouve, par exemple, et sans doute possible sur ce point en philologie, que la „Géographie“ est effectivement de Vardan Arévéltsi. Elle nous révèle l'existence de deux rédactions, abrégée et augmentée. Elle sert à reconstituer approximativement le texte original.

Le Maténadaran possède plus de 70 copies manuscrites de la „Géographie“ et que Berbérian ignore. Il est donc naturel que la publication qu'il nous donne ne puisse présenter un texte parfait et nous éclairer à la fois sur certaines questions philologiques et textuaires.

Le présent exposé qui ressort des 74 manuscrits de la „Géographie“, les mêmes qui sont conservés au Maténadaran, se propose, dans la mesure de ses moyens, de combler cette lacune et de contribuer aux recherches philologiques ultérieures.

Une étude préliminaire des manuscrits précités a justifié, dans l'ensemble, les solutions apportées par Haïg Berbérian, dans sa publication, à certaines questions philologiques et textuaires. Nos exemplaires comportent de même des rédactions abrégées et augmentées et, ce qui est remarquable, des additions faites par la suite et qui manquent dans la publication de Berbérian. Les plus intéressantes de ces additions sont citées par l'auteur qui se prononce sur la nécessité d'une publication critique et complète de la „Géographie“ qui embrasserait sans exception tous les manuscrits du Maténadaran et d'ailleurs s'y rapportant. Une pareille entreprise permettrait de restituer le texte original et de résoudre les nombreux problèmes soulevés par la „Géographie“ de Vardan Arévéltsi.